Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս 2—52—78։






# ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՆՇԵՂ ՎԵՐԵԼՔԸ— ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕՐԵՆՔՆ Է


Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու


Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության անսասան հոգատարությունը ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի սիստեմատիկ բարձրացման նկատմամբ բխում է սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքից, որի գլխավոր պահանջը հանդիսանում է ամբողջ հասարակության նյութական և կուլտուրական հարաճուն պահանջների առավելագույն բավարարումը՝ բարձրագույն տեխնիկայի բազայի վրա սոցիալիստական արտադրության անընդհատ աճման ու կատարելագործման միջոցով։

ՍՍՌՄ-ում ժողովրդական տնտեսության

բոլոր ճյուղերի զարգացումը միանգամայն օրինաչափ ձևով բարձրացնում է ժողովրդի բարեկեցությունը, որի վերելքի հիմնական ցուցանիշը ազգային եկամտի անընդհատ աճն է։

1940 թվականին ՍՍՌՄ-ում ազգային եկամուտը ցարական Ռուսաստանի 1913 թվականի ազգային եկամտի համեմատությամբ աճել էր ավելի քան 6 անգամ, իսկ 1940 թվականից մինչև 1953 թվականը՝ ավելի քան 2 անգամ։ Եթե կապիտալիստական երկրների ազգային եկամտի ճնշող մեծամասնությունը, որպես կանոն, յուրացվում է բնակչության փոքրամասնություն կազմող շահագործող դասակարգերի կողմից, ապա Սովետական Միության ազգային եկամտի 3/4-ը տրվում է աշխատավորության նյութական ու կուլտուրական կարիքների բավարարման համար, իսկ մնացած մասը հատկացվում է սոցիալիստական արտադրության ընդլայնմանը և համապետական ու հասարակական այլ կարիքների։ Ընդգծելով ՍՍՌՄ-ում ազգային եկամտի այսպիսի բաշխման խոշոր նշանակությունը, Ի. Վ. Ստալինը ասել է. «Ահա՛ թե որտեղ է բանվոր դասակարգի ու գյուղացիության միլիո-



նավորների մեջ սովետական իշխանության ունեցած ուժի և հեղինակության աղբյուրը։

Ահա՛ թե որտեղ է ՍՍՌՄ բանվորների ու գյուղացիների նյութական բարեկեցության սիստեմատիկ աճման հիմքը»։

Նկատի ունենալով, որ լայն սպառման ապրանքների պակասը վերացնելու և ապրանքների առատություն ստեղծելու միակ ճանապարհը թեթև արդյունաբերության շեշտակի վերելքը կազմակերպելու մեջ է, պարտիան և կառավարությունը մշակել են հսկայական ծրագիր, որի համաձայն առաջիկա 2—3 տարում պետք է ստեղծել ապրանքների այնպիսի առատություն, որ յուրաքանչյուր քաղաքում ու գյուղական շրջանում սովետական մարդիկ կարողանան գնել իրենց անհրաժեշտ բոլոր ապրանքները։ Այս խնդրի հաջող կենսագործման մասին է վկայում այն փաստը, որ միայն 1953 թվականին կառուցվել են լայն սպառման ապրանքներ արտադրող 300 նոր ձեռնարկություններ։ Ստեղծված են բոլոր հնարավորությունները լայն սպառման ապրանքների արտադրության հնգամյա պլանը 4 տարում կատարելու համար։

Ներկայումս աշխատավորության բարեկեցության շեշտակի բարձրացման համաժող-

վերջական խնդիրը հիմնականում կախված է գյուղատնտեսության հետագա վերելքից։ Պարտիան Կենտկոմի Սեպտեմբերյան, Փետրվար-մարտյան, Հունիսյան պլենումներում մշակել է գյուղատնտեսության բոլոր ճյուղերի և առաջին հերթին հացահատիկային տնտեսության, անասնաբուծության և կարտոֆիլի ու բանջարեղենի արտադրության հետագա զարգացման հոյակապ ծրագիր, որը հաջողությամբ կենսագործվում է կյանքում։

Նպատակ ունենալով է՛լ ավելի բարձրացնել ժողովրդի կյանքի նյութական մակարդակը, կոլտնտեսականների անձնական շահագրգռվածությունը և է՛լ ավելի ամրապնդել կոլտնտեսությունների նյութական բազան, պարտիան ու կառավարությունը ընդունեցին գյուղատնտեսական հարկի նոր օրենք, որի համաձայն զգալիորեն իջեցվել են կոլտնտեսականների անձնական տնտեսությունից գանձվող գյուղատնտեսական հարկը և պարտադիր հանձնումների նորմաները, զգալիորեն բարձրացված է գյուղատնտեսական արտադրանքի շատ տեսակների մթերման ու գնման գները, կոլտնտեսականներին լրիվին զիջված են անցյալ տարիների գյուղատնտեսական հարկերի ապառքները, պետությանը



անասնաբուծության մթերքների ու կարտոֆիլի հանձնումների գծով եղած պարտքերը։ Միայն այս միջոցառումների հետևանքով կոլտնտեսականների ու կոլտնտեսությունների եկամուտները ընդհանուր առմամբ աճեցին ավելի քան 13 միլիարդ ռուբլով։

Բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձի և գյուղացիների ռեալ եկամուտների բարձրացման կարևոր միջոց է հանդիսանում մասսայական սպառման ապրանքների գների սիստեմատիկ իջեցումը, որը պարզ կերպով ցույց է տալիս կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարությունը ժողովրդի բարեկեցության նկատմամբ։

Այս տարի, ապրիլի 1-ին, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության որոշմամբ կատարվեց լայն սպառման ապրանքների մանրածախ գների նոր, հետպատերազմյան տարիների թվով 7-րդ իջեցումը, որի հետևանքով միայն վերջին 4 տարում գները իջան ավելի քան 25 տոկոսով, հինգերորդ հնգամյա պլանով նախատեսված 23,5 տոկոսի փոխարեն։ Գների իջեցման քաղաքականության հետևանքով ապրանքների այն քանակը, որը 1947 թվականին բնակչությունը գնում էր 1000 ռուբ-

լով, այժմ կարելի է գնել 433 ռուբլով։ Իսկ այնպիսի կարևորագույն ապրանքների գները, ինչպիսին են հացը, մակարոնեղենը և ձավարեղենը, արդեն 1953 թվականին 1947 թվականի համեմատությամբ իջել են 3 անգամ, կարտոֆիլինը և բանջարեղենինը՝ ավելի քան 3 անգամ, շաքարինը՝ 2,3 անգամ, մսամթերքինը և կենդանական յուղինը՝ գրեթե 3 անգամ։

Գների այսպիսի խոշոր իջեցումը հնարավորություն տվեց միայն վերջին 3 տարում բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը բարձրացնել ավելի քան 35 տոկոսով և դրանով իսկ հինգերորդ հնգամյա պլանը այս ուղղությամբ գերակատարել 4 անգամ։

Միանգամայն այլ պատկեր գոյություն ունի կապիտալիստական երկրներում։ Բավական է ասել, որ եթե ՍՍՌՄ-ում 1947 թվականից մինչև 1954 թվականը գները միջին հաշվով իջեցվել են կեսից ավելի, ապա նույն ժամանակամիջոցում ապրուստի գնի ինդեքսը պաշտոնական տվյալներով ԱՄՆ-ում բարձրացել է 21 տոկոսով, իսկ Անգլիայում՝ 40 տոկոսով։

Միայն սոցիալիստական երկրում աշխատավոր մասսաները գիտակցում են և շոշա-



փում են գործնականում, որ ինչքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը, ինչքան ցածր է ինքնարժեքը, այնքան ավելի շատ են ապրանքները նրանց համար, այնքան ավելի ցածր են գները և այնքան ավելի լավ են նրանց կյանքի պայմանները։

Սովետական հասարակության առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ ՍՍՌՄ-ի աշխատավորության եկամուտը չի սահմանափակվում միայն դրամական աշխատավարձով։ Բոլորին հայտնի է, որ մեր երկրում բանվորները և ծառայողները պետության հաշվին ստանում են նպաստներ՝ սոցիալական ապահովագրության գծով, կենսաթոշակներ՝ սոցիալական ապահովության գծով, սանատորիաների, հանգստյան տների և մանկական հիմնարկությունների ուղեգրեր՝ անվճար կամ մեծ զեղչով, նրանք ամեն տարի արձակուրդներ են ստանում աշխատավարձի պահպանումով։

Քաղաքի և գյուղի բոլոր աշխատավորները ստանում են ձրի բժշկական օգնություն։ Պետությունը քաղաքում և գյուղում նպաստներ է տալիս բազմազավակ ու միայնակ մայրերին, ապահովում է անվճար ուսուցումը տարրական և յոթնամյա դպրոցում, ուսանողներին տալիս է թոշակներ։ Քաղաքի ու գյուղի

աշխատավորները միայն 1952 թվականին այսպիսի վճարումներ ստացել են 129 միլիարդ ռուբլի՝ 1940 թվականի 40,8 միլիարդ ռուբլու փոխարեն։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հատուկ ուշադրություն են դարձնում աշխատավորության բնակարանային պայմանների հետագա բարելավման վրա։ Բավական է ասել, որ հետպատերազմյան տարիներին քաղաքներում ու բանվորական ավաններում կառուցվել է ավելի քան 183 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ գյուղական վայրերում՝ ավելի քան 4 միլիոն տներ կոլտնտեսականների և գյուղական ծառայողների համար։ Իսկ սա նշանակում է, որ հետպատերազմյան տարիներին բնակարան են ստացել 10 միլիոնից ավելի ընտանիքներ։ Եթե նկատի ունենանք, որ ամեն մի ընտանիքը բաղկացած է միջին հաշվով 4—5 հոգուց, ապա կստացվի, որ վերջին 7—8 տարում բնակարանով ապահովվել են 40—50 միլիոն մարդ, այսինքն ավելի շատ մարդ, քան ապրում են ամբողջ Ֆրանսիայում։

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման ակնառու ցուցանիշ է հանդիսանում մահացության կրճատումը



և բնակչության թվի աճը։ Բավական է ասել, որ եթե մինչև ռևոլյուցիան ցարական Ռուսաստանում մահացության դեպքերը երկու անգամ ավելի շատ էին, քան ԱՄՆ-ում, Անգլիայում և Ֆրանսիայում, ապա այժմ ՍՍՌՄ-ում մահացությունը զգալի չափով քիչ է, քան ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում և երեք անգամ ավելի ցածր է, քան 1913 թվականին ցարական Ռուսաստանում։ Բացի դրանից, միայն 1950—1952 թ. թ. ՍՍՌՄ-ում բնակչության զուտ աճը կազմեց 9,5 միլիոն մարդ։

Մեր երկրի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և ինտելիգենցիան համոզված են, որ Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը այսուհետև ևս անդուլ հոգատարություն կցուցաբերեն սովետական մարդկանց մշտապես աճող նյութական ու կուլտուրական պահանջների առավելագույն բավարարման նկատմամբ, որովհետև սովետական մարդու բարօրությունը, սովետական ժողովրդի բարգավաճումը մեր պարտիայի և Սովետական կառավարության համար բարձրագույն օրենք է հանդիսանում։

---

## ԵՎՐՈՊԱՅԻ ԿՈԼԵԿՏԻՎ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Վ. ԲՈՐՈՎՍԿԻ**

*Եվրոպայում խաղաղությունն ապահովելը միջազգային այն կարևորագույն պրոբլեմներից մեկն է, որոնց վրա բևեռված է ամբողջ աշխարհի ժողովուրդների ուշադրությունը։ Ով կարող է մոռանալ այն բանը, որ հենց Եվրոպայում սկսվեցին երկու համաշխարհային պատերազմները, որոնք այնքան զոհեր առաջացրին, այնքան վիշտ ու տառապանքներ պատճառեցին մարդկությանը։ Ամբողջ աշխարհի միլիոնավոր մարդկանց լուրջ անհանգստություն է պատճառում այն փաստը, որ մեր օրերում Միացյալ Նահանգների ագրեսիվ շրջանները նորից վերածնում են գերմանական միլիտարիզմը, որ երկու համաշխարհային պատերազմ է հրահրել արդեն։*

*ԱՄՆ-ի իմպերիալիստներն ամեն կերպ փորձելով ստեղծել այսպես կոչված «Եվրոպական պաշտպանական միավորումը», որը մի քող է թաքցնելու գերմանական միլիտա-*



*րիզմի վերածնումը, թմբկահարում են, թե այդ միավորումը կկարողանա ապահովել խաղաղությունն ու անվտանգությունը Եվրոպայում։ Սակայն խաղաղության թշնամիներին չհաջողվեց այդ ստահոդ հավաստիացումներով գլխահան անել եվրոպական ժողովուրդներին։ Եվրոպայի ժողովուրդները գիտեն, որ Եվրոպայում խաղաղությունն ու անվտանգությունն ապահովելու համար գոյություն ունի մի այլ՝ իսկական ուղի, այն ուղին, որը ցույց է տալիս Սովետական Միությունը։ Չորս տերությունների բեռլինյան խորհրդակցությունում Սովետական Միությունը վեց երկրների ռազմական խմբավորում ստեղծելու ամերիկյան պլանին հակադրեց կոլեկտիվ անվտանգության համաեվրոպական պայմանագրի նախագիծը։ Առաջարկելով այդ պլանը, Սովետական Միությունը ելնում էր այն բանից, որ Եվրոպայում խաղաղությունն ու անվտանգությունն ապահովելու համար անհրաժեշտ է միավորել Եվրոպայի բոլոր պետությունների ջանքերը, անկախ նրանց հասարակարգից։ Սովետական նախագիծը սահմանում է, որ պայմանագրին կարող են մասնակցել եվրոպական բոլոր պետությունները, ներառյալ Գերմանիայի երկու մասերն էլ՝ հավասար*

իրավունքով, իսկ դրանց վերամիավորումից հետո՝ միավորված Գերմանիան։ Նախագծի համաձայն, պայմանագրի որևէ մասնակցի վրա հարձակվելու դեպքում պայմանագրի մյուս մասնակիցները պետք է հակահարված տան ագրեսորին։

Բեռլինի խորհրդակցությունում Սովետական Միության արած առաջարկներն իրենց հետագա զարգացումն ստացան այս տարվա մարտի 31-ի սովետական նոտայում։ Սովետական կառավարությունն այդ նոտայում հայտարարեց, որ ինքը խոչընդոտներ չի տեսնում, որպեսզի դրականորեն լուծվի Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության Համաեվրոպական պայմանագրին Միացյալ Նահանգների մասնակցելու հարցը։

Այսպիսով Սովետական Միության առաջարկները հանգում էին մի բանի՝ միավորել եվրոպական պետությունների ջանքերը հօգուտ խաղաղության ու անվտանգության։

Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության գաղափարը, որ առաջ է քաշել Սովետական Միությունը, համակրանք է գտնում միլիոնավոր խաղաղասեր մարդկանց կողմից և նորանոր կողմնակիցներ նվաճում։ Այժմ, երբ Ժնևյան խորհրդակցության բեղմնավոր արդյունքները կրկին անգամ համոզիչ կերպով ցույց տվին, որ խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդմամբ շահագրգռված պետությունների միջև խաղաղ բանակցությունների ուղին կարող է դրական արդյունքներ տալ, եվրոպական երկրների հասարակական լայն շրջաններն ավելի ու ավելի համառորեն պահանջում են իրենց կառավարություններից՝ անդրադառնալ սովետական առաջարկների քննարկմանը։



Սովետական կառավարությունն այդ պայմաններում անհրաժեշտ համարեց այս տարվա հուլիսի 24-ին դիմել Ֆրանսիայի, Մեծ Բրիտանիայի և ԱՄՆ-ի կառավարություններին մի նոր նոտայով։ «Սովետական կառավարությունն առաջարկում է,— ասված է այդ նոտայում,— Եվրոպայում կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու հարցի շուրջը մտքերի փոխանակության նպատակով մոտակա ամիսներին հրավիրել Եվրոպական բոլոր այն պետությունների, ինչպես նաև Ամերիկայի Միացյալ Նահանգների խորհրդակցություն, որոնք կցանկանան մասնակցել այդ խորհրդակցությանը։ Սովետական կառավարությունը ցանկալի է համարում, որ Չինական Ժողովրդական

Ռեսպուբլիկան այդ խորհրդակցությանն ուղարկի իր դիտորդին։

Հուլիսի 24-ին սովետական նոտան կոլեկտիվ անվտանգության Համաեվրոպական պայմանագրի նախագիծը լրացրեց մի նոր կարևոր դրույթով՝ տնտեսական համագործակցության վերաբերյալ։ Նկատի է առնըվում, որ պայմանագրին մասնակցող պետությունները պարտավորություն ստանձնեն ձեռք առնելու այնպիսի միջոցներ, որոնք ուղղված լինեն առևտրական և տնտեսական այլ կապերի զարգացմանը պետությունների միջև։

Սովետական Միությունը մեկ անգամ ևս հաստատեց, որ միջազգային հարաբերություններում նա շարունակ ելնում է տարբեր հասարակարգ ունեցող պետությունների գոյակցության հնարավորությունից, միջազգային անվտանգության ու խաղաղության ապահովմամբ շահագրգռված եվրոպական բոլոր պետությունների կոլեկտիվ ջանքերի վրա հենվող միջազգային համագործակցության անհրաժեշտությունից։

Հաշվի առնելով եվրոպական բոլոր պետությունների խորհրդակցության շուտափույթ հրավիրման կարևորությունը, Սովե-



տական կառավարությունը օգոստոսի 4-ին մի հայտարարությամբ դիմեց Ֆրանսիայի, Անգլիայի և ԱՄՆ-ի կառավարություններին։ Հայտարարության մեջ ասված է, որ Սովետական կառավարությունը նպատակահարմար կհամարեր, որպեսզի չորս տերությունները նախապես համատեղ քննարկեին այդպիսի խորհրդակցություն հրավիրելու և նրա հաջողությանը նպաստելու հարցը։

Սովետական կառավարությունն իր հայտարարության մեջ ընդգծեց, որ Ֆրանսիայի, Անգլիայի, ԱՄՆ-ի և ՍՍՌՄ արտաքին գործերի մինիստրների այդ խորհրդակցությունում, որը կարող է տեղի ունենալ մոտավորապես 1954 թվականի օգոստոս—սեպտեմբերին, նա նկատի ունի շարունակել գերմանական հարցի քննարկումը։ «Սովետական կառավարությունը,— ասված է հայտարարության մեջ,— ընդսմին հաշվի է առնում և այն հանգամանքը, որ գերմանական պրոբլեմի հիմնական հարցերում, այն է՝ Գերմանիայի միասնությունը վերականգնելու և Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր կնքելու հարցում մինչև այժմ չի հաջողվել համաձայնության հասնել, քանի որ, երևում է, դեռ չեն ստեղծվել դրա համար անհրաժեշտ բոլոր պայմանները։ Սովետա-

կան կառավարության կարծիքով նման դրության պայմաններում հարկ կլիներ նոր ջանքեր գործադրել, որպեսզի համաձայնություն ձեռք բերվեր գերմանական պրոբլեմի առաջին հերթին այն մի քանի առանձին հարցերի վերաբերյալ, որոնց վերաբերմամբ արդեն այժմ կարող են գտնվել շահագրգռված կողմերի համար ընդունելի լուծումներ»։

Ամբողջ աշխարհը մեծ հետաքրքրությամբ և ուշադրությամբ ընդունեց սովետական առաջարկները, որոնց նպատակն է ամրապնդել կոլեկտիվ անվտանգությունը Եվրոպայում։ Եվ դա հասկանալի է։ Համաեվրոպական պայմանագրի հիման վրա ստեղծվող կոլեկտիվ անվտանգության սիստեմը կհամապատասխաներ ժողովուրդների արմատական շահերին և վճռական նշանակություն կունենար միջազգային լարվածությունը թուլացնելու համար։

Կոլեկտիվ անվտանգության Համաեվրոպական պայմանագիր կնքելու գաղափարը ջերմ պաշտպանություն գտավ Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Ալբանիայի, ինչպես նաև Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարությունների կողմից։

Սովետական առաջարկները գնալով ավելի



մեծ պաշտպանություն են գտնում նաև արևմտա-եվրոպական երկրների ժողովուրդների կողմից։ «Եվրոպական պաշտպանական միավորում» ստեղծելու դեմ, հանուն Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության սկսված հայրենասիրական շարժումը առանձնապես մեծ թափ է ընդունել Ֆրանսիայում։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները կոպիտ ճնշում են գործ դնում այդ երկրի վրա, ձգտելով ստիպել նրա Ազգային ժողովին՝ վավերացնելու «Եվրոպական պաշտպանական միավորում» ստեղծելու մասին փարիզյան պայմանագիրը։ Ֆրանսիական ժողովրդի ճնշող մեծամասնությունը վճռականորեն դեմ է «Եվրոպական բանակին» և նրա կապակցությամբ՝ գերմանական միլիտարիզմի վերածնմանը։ Գաղափար կազմելու համար, թե Ֆրանսիայում ինչպիսի մեծ ուժ են ներկայացնում «Եվրոպական բանակի դեմ հանդես եկողները, բավական է հիշատակել, որ փարիզյան պայմանագրի օգտին քվեարկելուց հրաժարված դեպուտատները պառլամենտական վերջին ընտրությունների ժամանակ ստացան ավելի քան 11 միլիոն ձայն, այսինքն՝ ընտրողների ճնշող մեծամասնության ձայները։

«Սովետական կառավարության նախա-

ձեռնուﬂթյունը,— գրել է «Յումանիտե» թերթում Ֆրանսիայի կոմունիստական պարտիայի Քաղբյուրոյի անդամ Էտյեն Ֆաժոն, — երախտագիտությամբ ու հուսով ընդունեց ֆրանսիացիների հսկայական մեծամասնությունը... Չի կարելի ապահովել խաղաղությունը Եվրոպայում՝ առանց հաշվի առնելու կոլեկտիվ անվտանգության փորձված ըսկըզբունքները»։

Գերմանիայում, ինչպես և Ֆրանսիայում, ջերմ պաշտպանություն են գտնում սովետական առաջարկները։ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում համաժողովրդական հարցմանը մասնակիցների 93,6 տոկոսը դեմ է արտահայտվել «եվրոպական պաշտպանական միավորմանը»։ Արևմտյան Գերմանիայում, որտեղ հասարակությունը հարցում է անցկացրել սեփական նախաձեռնությամբ, հարցման առաջին արդյունքները ցույց տվին, որ քվեարկողների ճնշող մեծամասնությունը «եվրոպական պաշտպանական միավորմանը» դեմ է արտահայտվել։ «Եվրոպական պաշտպանական միավորմանը» Արևմտյան Գերմանիայի մասնակցելու դեմ հանդես են եկել նախահիտլերյան Գերմանիայի այնպիսի հայտնի պետական գործիչներ, ինչպիսիք են՝ Իոզեֆ



Վիրտը, Հենրիկո Բրյունինգը, Հանս Լյութերը և շատ ուրիշներ։ Իոզեֆ Վիրտը մամուլում հայտարարել է. «Այն ուղին, որ մեծ ճշտությամբ նշեց արտաքին գործերի մինիստր Մոլոտովը, այն է՝ կոլեկտիվ անվտանգության ապահովումը ամբողջ Եվրոպայում, տալիս է Եվրոպայում խաղաղության հարցի լուծումը...»։

Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության վերաբերյալ սովետական առաջարկները լայնորեն հավանության արժանացան արևմտա-եվրոպական նաև այլ երկրներում։ Բեռլինում տեղի ունեցած եվրոպական պրոֆմիութենական կոնֆերենցիայի դիմումի մեջ, կոնֆերենցիայի, որին մասնակցում էին եվրոպական երկրների 500 ներկայացուցիչներ, ասված է. «Բոլոր խաղաղասեր ժողովուրդների համար գոյություն ունի միայն մեկ ուղի, որը տանում է դեպի լարվածության թուլացումը և դեպի խաղաղություն— դա կոլեկտիվ անվտանգության ուղին է»։

Անտարակուսելի է, որ Եվրոպայի անվտանգության ամրապնդման և ժողովուրդների միջև խաղաղ համագործակցություն հաստատելու նպատակ ունեցող սովետական առաջարկները միլիոնավոր նոր կողմնակիցներ կնվաճեն բոլոր երկրներում։ Այդ առաջարկները համապատասխանում են ո՛չ միայն եվրոպական ժողովուրդների, այլև աշխարհի բոլոր ժողովուրդների արմատական շահերին։

# ԻՆՉՊԵՍ ՍՏԱՑԱՆ ԲԱՐՁՐ ԲԵՐՔ

## Վ. ԴԱՆԻԵԼՅԱՆ

*Կիրովականի շրջանի Սարահարթ գյուղի Չկալովի անվան կոլտնտեսության ճակնդեղագործները ամեն տարի շաքարի ճակընդեղի բարձր բերք են ստանում։*

*Կիրառելով առաջավոր ագրոնոմիական գիտության նվաճումները, սարահարթցիները վերջին երեք տարում շաքարի ճակնդեղի բերքատվության պլանային առաջադրանքը կատարել են կրկնակի չափով։ Անցյալ գյուղատնտեսական տարում մրցելով եղբայրական Վրաստանի Քարելիի շրջանի Լեթեթի գյուղի կոլտնտեսության ճակնդեղագործների հետ, սարահարթցիները պատվով կատարեցին ստանձնած պարտավորությունները և յուրաքանչյուր հեկտարից հավաքեցին 472 ցենտներ ճակնդեղ։*

*Սարահարթցիները ինչպե՞ս կարողացան հասնել նման բարձր բերքատվության։ Ամենից առաջ նրանով, որ ճակնդեղի ցանքը կատարեցին շատ կարճ ժամկետում, ընդամենը մեկ հնգօրյակում, հացահատիկային կուլ-*



*տուրաների ցանքին զուգընթաց, այնուհետև ամբողջ աշխատանքը կենտրոնացրին պլանտացիաների մշակության վրա, անընդհատ բարելավելով ճակնդեղի մշակությունը։ Այսպես, օրինակ, նրանք ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում կատարեցին մակերեսային փխրեցումը, նոսրացումը և ոռոգման աշխատանքները։ Ճակնդեղի ցանքի տակ դրվող հողի յուրաքանչյուր հեկտարը պարարտացրեցին 40 տոննա գոմաղբով, 8 ցենտներ տարբեր հանքային պարարտանյութերով։ Միաժամանակ ուժեղ պայքար ծավալեցին ճակնդեղի վնասատուների և հիվանդությունների դեմ։*

*Սարահարթի ճակնդեղագործներն իրենց ազնիվ ու հայրենանվեր աշխատանքով ցույց են տալիս, որ մեր պայմաններում նույնպես կարելի է ստանալ ճակնդեղի ռեկորդային բերք։*

*Չի կարելի ասել, թե Սարահարթ գյուղի հողակլիմայական պայմաններն ավելի նպաստավոր են, քան հարևան կոլտնտեսությունների հողակլիմայական պայմանները։ Ընդհակառակը, սարահարթցիներն ունեն համեմատաբար սակավ բերրի հողեր։ Սակայն նրանք ունեն հողից առավելագույնը վերցնելու հմտություն։*

Որպեսզի ճակնդեղի պլանտացիաները լինեն լիարժեք և օգտագործվի հողի ամբողջ մակերեսը, սարահարթցիները լայն մասշտաբով կիրառում են բույսերի սածիլման պրակտիկան։ Նոսրացման ժամանակ սածիլման միջոցով լրացնում են բացատ տարածությունները կամ թույլ ու չզարգացած բույսերը փոխարինում են առողջ բույսերով։ Միայն անցած տարի Սարգիս Մարկոսյանի և Հաչիբար Քոթանչյանի բրիգադները բացի պլանտացիաներից, ջրատար առուների և ճանապարհների մոտակա ազատ տարածություններում երկու շաբաթ անընդհատ սածիլում կատարեցին, օրական յուրաքանչյուր բրիգադայում հեկտարի բույսերի քանակը ավելացնելով մոտ չորս հազարով։ Պլանտացիայի առաջին ոռոգումից հետո արդեն չէր կարելի տարբերել սածիլված և ցանովի տարածությունները։

Այս բոլորի շնորհիվ կոլտնտեսությունում տարեցտարի բարձրանում է ճակնդեղի պլանտացիաների բերքատվությունը։ Այսպես, կոլտնտեսությունը 1951 թվականին մեկ հեկտարից ստացել է 350 ցենտներ ճակնդեղ, 1952 թվականին՝ 408 ցենտներ, իսկ 1953 թվականին՝ 472 ցենտներ, պլանով նախատեսված 220 ցենտների փոխարեն։ Մար-



կոսյանի դաշտավարական բրիգադն 12 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 503,3 ցենտներ շաքարի ճակնդեղի բերք, իսկ այդ բրիգադայի օղակավարուհիներ Ա. Վարդերեսյանը և Ս. Փիլոյանը յուրաքանաչյուր հեկտարից ստացել են 535 ցենտներ բերք։ Յուրաքանչյուր հեկտարից 475 ցենտներ բերք է հավաքել բրիգադիր Լ. Բարիգյանը, իսկ օղակավարուհիներ Ն. Քարամյանը և Ա. Բարիգյանը ամեն մի հեկտարից ստացել են 500 ցենտներ ճակընդեղ։ Բարձր բերք է հավաքել նաև Հ. Քոթանչյանի բրիգադան։ Նրա բրիգադայից օղակավարուհի Բ. Գրիգորյանը 4 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 530 ցենտներ բերք։

Այսպիսով, ճակնդեղի բերքատվության պլանը կոլտնտեսությունը կատարեց կրկնակի չափով և պետությանը հանձնեց ավելի շատ ճակնդեղ, քան հանձնում էր նախորդ տարիներին։

Հանձնված ճակնդեղի դիմաց կոլտնտեսությունը միայն անցյալ տարի ստացավ 539 հազար ռուբլի դրամ և 26 տոննա շաքար։ Ստացված դրամը և շաքարը բաշխվեց կոլտնտեսականներին։

Կոլտնտեսությունը 1952—53 թվականնե-

րին շաքարի ճակնդեղի բերքատվության բարձրացման գործում ձեռք բերած բարձր ցուցանիշների համար հաստատված է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու և ներկայացվում է լայն ցուցադրման։ Ցուցահանդեսի թեկնածուներ են հաստատված նաև կոլտնտեսության նախագահ ընկ. Վ. Ջանազյանը, դաշտավարական № 2 բրիգադայի բրիգադիր Ս. Մարկոսյանը, օղակավարուհիներ Ա. Վարդերեսյանը, Բ. Գրիգորյանը, Ն. Քարամյանը և Ա. Բարիգյանը։

Ոգեշնչված ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան, Փետրվար-մարտյան և Հունիսյան պլենումների որոշումներով, եղբայրական ռեսպուբլիկաների Սարահարթ և Լեթեթի գյուղերի ճակնդեղագործները նոր մրցություն են սկսել ճակնդեղի ավելի բարձր բերք ստանալու համար։ Նրանք պարտավորվել են այս տարի հեկտարից ստանալ 550 ցենտներ ճակնդեղի բերք և նորից նվաճել Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու պատվավոր իրավունք։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

## ԱՅՍ ՏԱՐԻ ԻՆՉ Է ԿԱՌՈՒՑՎՈՒՄ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում բուռն թափով ծավալվում են շինարարական աշխատանքները։ Կառուցվում են էլեկտրակայաններ, գործարաններ ու ֆաբրիկաներ, գիտական ու ուսումնական հաստատությունների շենքեր, հարյուրավոր բնակելի տներ և այլն։ Ահա այդ մասին թվեր և փաստեր։

✪ Ուժեղ թափով առաջ են գնում Արզնու հիդրոէլեկտրակայանի կառուցման աշխատանքները։

✪ Այս տարի ռեսպուբլիկայում կառուցվում են լայն սպառման ապրանքների արդյունաբերության մեծ թվով ձեռնարկություններ, որոնց վրա ծախսվելու է ավելի քան 165 միլիոն ռուբլի։ Սկսվեց Կիրովականի կարի գործարանի շինարարությունը։ Գործարանում աշխատելու են ավելի քան 5 հազար մարդ։ Գործարանը տարեկան տալու է մի քանի տասնյակ միլիոն ռուբլու պատրաստի հագուստեղեն։ Լենինականի Տեքստիլ կոմբինատը ընդարձակելու և նոր ցեխեր բաց անելու համար այս տարի ծախսվելու է ավելի քան 16 միլիոն ռուբլի։ Ընդարձակվում և նորա-

գույն տեխնիկայով հագեցվում է Լենինականի մանարան, գուլպա-տրիկոտաժի, կորդի և մի շարք այլ գործարաններ։

✪ Երևանում, Հոկտեմբերյանում, Ղափանում և ռեսպուբլիկայի մի շարք այլ շրջաններում ու քաղաքներում կառուցվում են կոնսերվի գործարաններ և նրանց օժանդակ ցեխեր։ Շինարարական այդ աշխատանքների արժեքը կկազմի 19 միլիոն ռուբլի։ Սպիտակի շրջանի Սպիտակավանում կառուցվում է լիմոնի թթվի գործարան, որի շինարարության վրա ծախսվելու է 4 միլիոն ռուբլի։ Արզնիում կառուցվող 22ի գործարանի շինարարության վրա միայն այս տարի կծախսվի ավելի քան 5 միլիոն ռուբլի։

✪ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա զարգացման համար միայն այս տարի կկատարվի մոտ 100 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։

Այս տարի ավարտվելու է Ներքին Ջանգվի ջրանցքի կառուցումը։ Ջրանցքը ոռոգելու է ավելի քան 1.000 հեկտար խոպան հողեր։

Արազդայանի ճահճոտ հողերի չորացման և անջրդի հողերը ոռոգելի դարձնելու միջոցով 1300 հեկտար խոպան հողեր դառնալու են մշակելի։

Այս տարի ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում ջրատար ցանցի ընդարձակման աշխատանքները կատարելու համար ծախսվում է 36,6 միլիոն ռուբլի։

✪ Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում կառուցվում, բարեկարգվում և ընդար-



ձակվում են մեքենա-տրակտորային կայանները։ Այս աշխատանքների համար հատկացված է 15 միլիոն ռուբլի։

✪ Այս տարի ռեսպուբլիկայի քաղաքներում և շրջկենտրոններում կատարվելու է 138,8 միլիոն ռուբլու բնակարանային շինարարություն։ Շահագործման կհանձնվի 102 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Այլ կերպ ասած, ընթացիկ տարում բնակարանով կապահովվեն մոտ 20.000 մարդ։ Նոր բնակելի տներ են կառուցվում Երևանում, Լենինականում, Կիրովականում, Ալավերդում, Ղափանում, Հոկտեմբերյանում, Արտաշատում և շատ ուրիշ տեղերում։

✪ Այժմ ռեսպուբլիկայում կառուցվում են 16 հիվանդանոցային նոր շենքեր և ընդարձակվում են 3 գործող հիվանդանոցներ ու բուժարաններ։ Այդ նպատակին մինչև տարվա վերջը կծախսվի 11 միլիոն ռուբլի։ Նոր հիվանդանոցներ են կառուցվում Քաջարանում, Սպիտակում, Երևանում, Էջմիածնում, Նոր Բայազետում, Աշտարակում, Թալինում, Կոտայքում և շատ շրջկենտրոններում ու գյուղերում։ Երևանի Կանազ գործարանին և Ալավերդու պղնձի կոմբինատին կից կառուցվում են մերձգործարանային առողջարաններ, ուր հանգստանալու են բանվոր-ծառայողները։

✪ Այս տարի ռեսպուբլիկայում 19 միլիոն ռուբլու դպրոցական շինարարություն է կատարվում։ ՍՍՌՄ

Սև և Գունավոր մետաղների մինիստրության ռեսպուբլիկական ձեռնարկությունները կառուցում են 5 դպրոցական նոր շենքեր։ Դպրոցական նոր շենքեր են կառուցում նաև Արզնի գէսի շինարարությունը, էլեկտրալամպերի գործարանը, Ալավերդու քիմկոմբինատը, Արարատի շիֆերի, Սպիտակի շաքարի գործարանները, Երկաթգծի Երևանի բաժանմունքը, Թայիրովի անվան սովխոզը։

✪ Լուսավորության մինիստրությունը ռեսպուբլիկայի 16 քաղաքներում, շրջկենտրոններում ու գյուղերում կառուցում է դպրոցական 22 նոր շենք։ Երևանում, Գորիսում, Ջերմուկում, Կալինինոյում, Իջևանում կառուցվում են կինոթատրոնի նոր շենքեր։

✪ Այս տարի սանատորիաներ և հանգստյան տներ են կառուցվում Ջերմուկում, Գալավինոյում, Արզնիում և Դիլիջանում։ Նորակառույց առողջարաններից շահագործման է հանձնվելու 240 մահճակալ և 24 բուժ. կաբինետներ։ Առողջարանների շինարարության վրա ներդրված է 6 միլիոն 170 հազար ռուբլի։ 1500 երեխաների համար մանկապարտեզներ և մանկամսուրներ են կառուցվում Երևանում, Կիրովականում և շրջանային շատ կենտրոններում։ Մանկական հիմնարկների շինարարության վրա ծախսվելու է 4 միլիոն 200 հազար ռուբլի։

✪ Երևանի Միկոյանի ռայոնում կառուցվում է 2 կիլոմետր երկարությամբ տրամվայի գիծ և ավելի քան 6 կիլոմետրով ընդարձակվում է տրոլեյբուսի



ցանցը։ Երևան քաղաքում կատարվելու է 140 հազար քառակուսի մետր ճանապարհային շինարարություն։ Կիրովականում այս տարի սկսվեց ավտովերանորոգման գործարանի շինարարությունը։

✪ Հայկոոպի միջոցներով այս տարի կատարվելու է 10,5 միլիոն ռուբլու շինարարություն։ Ռեսպուբլիկայի 25 շրջաններում և քաղաքներում կառուցվելու են 165 զանազան նշանակության խանութներ, որը զգալի չափով կնպաստի առևտրի զարգացմանը։ ՍՍՌՄ Առևտրի մինիստրության գծով այս տարի կապիտալ շինարարության համար ներդրված է 11 միլիոն 300 հազար ռուբլի։ Ռեսպուբլիկայի տարբեր քաղաքներում և շրջաններում կառուցվում և շահագործման են հանձնվելու 37 առևտրական և 10 հասարակական սննդի կետեր։

✪ Այս տարի շարունակվում են բարձրագույն ուսումնական հաստատությունների նոր շենքերի կառուցման աշխատանքները։ Տերյան փողոցի վերջում կառուցվում են Գյուղատնտեսական ու Պոլիտեխնիկական ինստիտուտի շենքերը։ Այգեստանում արդեն երկրորդ տարին է, ինչ կառուցվում է Երևանի Պետական համալսարանի նոր շենքը։

---

# ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԱՐԿՏԻԿԱՅԻ ՍԱՌՈՒՅՑՆԵՐՈՒՄ

*Նայեցեք մեր Հայրենիքի հյուսիսային մասի քարտեզին։ Մուրմանսկից մինչև Սեմյոն Դեժնևի հրվանդանը ձգվում է Հյուսիսային ծովային Մեծ ճանապարհի հսկայական տրասսան։ Այդ տրասսան, անցնելով Բարենցի և Կարսկի ծովերով, Լապտևների և Արևելա-Սիբիրյան ծովերով, Սովետական Միության հյուսիսային ափերը կապում է երկրի շատ խոշոր արդյունաբերական կենտրոնների հետ։*

*Նավերը հեշտությամբ չէ, որ անցնում են Հյուսիսային ծովային ճանապարհի տրասսայով։ Նույնիսկ բևեռային ամռան կեսերին նրանք ստիպված են ծանր պայքարի մեջ մտնել Արկտիկայի լողացող սառցադաշտերի հետ, շրջանցել հսկայական սառցադաշտեր, դիմել հզոր սառցահատ նավերի օգնությանը։ Այդ ամենը դժվարացնում է նավերի երթևեկությունը և կարևոր ժողովրդատնտեսական բեռները սպասեցնել է տալիս ճանապարհին։*

*Սովետական բևեռախույզները հյուսիսային ափերին ստեղծել են ոչ քիչ թվով լավ կահավորված կայաններ, որոնք մեր եղանակի ծառայությանը մատակա-*



*րարում են կարևոր օդերևութաբանական տեղեկություններ, սպասարկում են ծովային ճանապարհի տրասսան- Եղանակի և սառույցների շարժման վերաբերյալ ստացվող տվյալները հնարավորություն են տալիս համեմատաբար արագ կատարել նավագնացությունը՝ Մուրմանսկից մինչև Վլադիվոստոկ։ Բայց որպեսզի Հյուսիսային ծովային ճանապարհը նավագնացության ժամանակ դարձվի մշտապես գործող ճանապարհ, հարկավոր է ավելի ստույգ ու սպառիչ տեղեկություններ ունենալ արկտիկական կամակոր բնության այն երևույթների և պրոցեսների մասին, որոնք տեղի են ունենում երկրագնդի ափերից հեռու, Արկտիկական ավազանի բուն կենտրոնում։*

*Պատերազմից հետո սովետական բևեռախույզները բազմիցս կազմակերպել են արշավախմբեր դեպի հյուսիսի բարձր լայնությունները։ Այսպես, 1950—1951 թվականներին Արկտիկայի սառույցների վրա լողում էր «Հյուսիսային բևեռ—2» գիտական արշավախումբը։ Սովետական գիտնականները օդաչուների հետ միասին բազմաթիվ կարճատև վայրէջքներ են կատարել լողացող սառցաշերտերի վրա։ Այդ ժամանակամիջոցում նրանք հետազոտել են եղանակը, սառույցների վիճակն ու շարժումը, ուսումնասիրել են Հյուսիսային Սառուցյալ օվկիանոսի հատակի երկրաբանական կազմությունը, ջրի աղիությունը, ջերմաստիճանը և հոսանքը՝ տարբեր խորություններում։ Այդ բոլոր տեղեկությունները շատ նորություններ են մտցրել Արկտիկայի բնու-*

թյունը ճանաչելու գործում։ Այսպես, օվկիանոսի հատակում հայտնաբերվեց մի վիթխարի ստորջրյա լեռնաշղթա, որը կոչվեց Լոմոնոսովի անունով։

Երկրաբան ֆիզիկոսները ավելի հանգամանորեն ուսումնասիրեցին մեր մոլորակի Հյուսիսային կիսագնդի մագնիսական առանձնահատկությունները, կազմեցին մագնիսական թեքումների ավելի ճշգրիտ քարտեզներ, որոնք չափազանց անհրաժեշտ են ինքնաթիռների թռիչքի և նավերի շարժման ուղղությունը ճիշտ որոշելու համար։ Բացի դրանից, սովետական գիտնականներն ապացուցեցին, որ Հյուսիսային կիսագնդում գոյություն չունի երկրորդ մագնիսական բևեռ, ինչպես կարծում էին մինչև վերջերս։

Եվ ահա, 1954 թվականի գարնանը, Մոսկվայից դեպի Արկտիկա մեկնեց մի նոր արշավախումբ։ Այս անգամ Հյուսիսային ծովային ճանապարհների գլխավոր վարչությունը և Գիտությունների ակադեմիան որոշեցին Կենտրոնական Արկտիկական ավազանի լողացող սառույցների վրա ստեղծել մշտապես գործող գիտական երկու կայան։ Որոշվեց կայաններից մեկը՝ «Հյուսիսային բևեռ—3» կայանը հիմնել Հյուսիսային բևեռի շրջանում՝ հյուսիսային լայնության 86-րդ աստիճանի վրա, իսկ երկրորդ՝ «Հյուսիսային բևեռ—4» կայանը նախկին Անմատչելիության բևեռի շրջանում։ Դա Վրանգել կղզուց զգալիորեն դեպի հյուսիս-արևմուտք է գտնվում։ «Հյուսիսային բևեռ—4» և «Հյուսիսային բևեռ—3» կայանները ջրերի վրա լողալու են ամբողջ



տարվա ընթացքում։ Այդ ժամանակամիջոցում գիտնականների մի ջոկատ հանգամանորեն հետազոտելու է օդային օվկիանոսի շերտերի հաստությունը՝ Կենտրոնական Արկտիկական ավազանի վրա, օդերևութաբանները կատարելու են եղանակի դիտումներ և իրենց կարճատև պրոգնոզներն են հաղորդելու Մեծ Երկիր, հիդրոլոգները և օվկիանոսագետները հանգամանորեն ուսումնասիրելու են ցուրտ Սառուցյալ օվկիանոսի հատակի երկրաբանական կազմությունը, ջրի աղիությունը ու ջերմաստիճանը տարբեր տեղերում, օվկիանոսի կենսաբանական կյանքը։

Դեռ նախքան մերձմոսկովյան օդանավակայանից առաջին ինքնաթիռի օդ բարձրանալը՝ գիտնականները հանգամանորեն կշռադատել են իրենց հետագա աշխատանքների պլանը և արշավախմբի հանդերձումը։ Ամեն ինչ՝ սկսած բնակարաններից և վերջացրած աշխատողների սպիտակեղենով, մտածված, կշռադատված, ստուգված է։ Կիլոգրամ առ կիլոգրամ, տոննա առ տոննա հավաքվում և ավելի ու ավելի մեծանում էր այն սարքավորումների ու բեռների ցուցակը, որը նախատեսվում էր ուղարկել օվկիանոսի լողացող սառույցների վրա։

Սառցաշերտն այնքան էլ ամուր հարթակ չէ այդպիսի քանակությամբ բեռների համար։ Իր ժամանակին պապանինականների համար համեմատաբար հեշտ էր իրենց փոքրիկ ճամբարի տասը տոննա բեռը մի տեղից մյուսը տանելը։ Այժմ Արկտիկա են ուղարկ-

վում ամենաարժեքավոր սարքավորումներ ու գործիքներ, որոնց քաշը հասնում է հարյուրավոր տոննայի։ Ուստի մարդկանց աշխատանքը հեշտացնելու համար որոշվեց այնտեղ ուղարկել նաև Լիպեցկի գործարանի հզոր «ԿԴ—35» տրակտորներ և Գորկու ավտոմոբիլի գործարանի «ԳԱԶ—69» բեռնատար ավտոմեքենաներ։ Այդ տրակտորները և ավտոմեքենաները հատուկ հարմարանքներ ունեն՝ սառցի վրա հեշտությամբ շարժվելու համար։

Մինչ բեռները Դիքսոն կղզում, Շմիդտի հրվանդանում և հյուսիսային մյուս կետերում կենտրոնացնելը, մինչ գլխավոր ուժերը Արկտիկայի մատույցներին մոտեցնելը, բևեռային օդաչուները երկրի ափերից հեռու զբաղված էին ապագա գիտական կայանների համար հարմար ու հուսալի սառցադաշտեր որոնելով։

Մի պայծառ արևոտ օր օդաչու Տիտլովի անձնակազմը 74-րդ զուգահեռականի վրա տեսավ մի մեծ ձվաձև թանձր սպիտակ սառցակտոր։ Դա մի բավական պատկառելի կղզի կարծես լիներ, որ բնությունը ստեղծել էր ճամբարի համար հենց այն կոորդինատներում, որտեղ նախատեսված էր հիմնել «Հյուսիսային բևեռ-4» կայանը։ Սովետական Միության Հերոս Վ. Ի. Մասլեննիկովի ինքնաթիռը վայրէջք է կատարում։

Սառցի վրա, որտեղ դեռ մարդու ոտքը չէր կոխել, սկսվում է կյանքը։ Կայանի պետ Ե. Ի. Տոլստիկովը ընտրում է ճամբարի տեղը, և գիշեր-ցերեկ նրա մոտ ցած են իջնում ինքնաթիռները։ Ինքնաթիռները ցած



էին իջնում ոչ թե հնամենի (բազմամյա) սառցի վրա, այլ նրան մոտիկ գտնվող երիտասարդ ու տափակ սառցի վրա, որտեղից և բեռները ճամբար էին տեղափոխում տրակտորով և ամենագնաց գազ-ավտոմեքենայով։

Բայց ահա երկրի հարյուրավոր կիլոմետրերի վրա գտնվող ափերից թռավ-եկավ մի ուղղաթիռ (վերտոլետ)։ Նա ցած իջավ ուղիղ արկղների մոտ, վերցնելով մեծածավալ բեռները և վեր բարձրանալով ցած իջավ ապագա ճամբարի կենտրոնը։ Իսկ այնտեղ, ռադիստի առաջին վրանից ոչ հեռու պատրաստված էին արդեն օդերևութաբանների տնակները, դրված էին գործիքների եռոտանիները, որոնց օգնությամբ գիտնականները իրենց ճամբարի գոյության առաջին իսկ օրից սկսեցին երկրի մագնիսականության չափումները, անընդհատ ամեն ժամ դիտումներ են կատարում նախկին Անմատչելիության բևեռի շրջանի կամակոր եղանակի նկատմամբ։

Մի քանի օր հետո մի մեծ սառցակտորի վրա իր կյանքը սկսեց նաև մյուս լողացող ճամբարը։

Կենտրոնական Արկտիկայի սառույցների մեջ, այսպիսով, ստեղծվել են գիտական երկու խոշոր կայաններ։ Այդ կայանների գիտնականներն ամեն օր, ամեն ժամ անընդհատ ուսումնասիրում են Արկտիկայի բնությունը, սառույցների շարժումը, եղանակը։ Ռադիոն օրական ութ անգամ հաղորդում է Մոսկվա, որ այնտեղ, Հյուսիսային բևեռի մոտ, սովետական մարդիկ շարունակում են իրենց անձնուրաց աշխատանքը՝ հանուն մեր գիտության…

# ՌՈՒՄԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

○ Մինչև ժողովրդական կարգերի հաստատումը, Ռումինիայի աշխատավորությունը շահագործվում էր ոչ միայն ներքին հարստահարիչների կողմից, այլև կողոպտվում էր օտարերկրյա կապիտալիստների կողմից։ Երկրի նավթային արդյունաբերության մեջ օտարերկրյա կապիտալը կազմում էր 91,9 տոկոսը, մետաղամշակման արդյունաբերության մեջ՝ 74 տոկոսը, բնական գազի և էլեկտրաէներգիայի արտադրանքի մեջ՝ 95 տոկոսը, քիմիական արդյունաբերության մեջ՝ 72 տոկոսը, փայտամշակման արդյունաբերության մեջ՝ 70 տոկոսը և այլն։

● Ժողովրդական իշխանության տարիներին լայն թափ է ստացել Ռումինիայի սոցիալիստական արդյունաբերության զարգացումը։ 1949 թվականին արդյունաբերության արտադրանքը հասավ նախապատերազմյան մակարդակին, իսկ 1953 թվականին 2,5 անգամ գերազանցեց 1938 թվականի մակարդակը։ Միաժամանակ շարունակվում էր սոցիալիստական սեկտորի



տեսակարար կշռի անընդհատ աճը, որը արդյունաբերության մեջ կազմում է 99 տոկոսը։

○ 1953 թվականի վերջին Ռումինիայի արդյունաբերությունը արտադրել է ավելի քան 9 միլիոն տոննա նավթ, մոտ 6 միլիոն տոննա ածուխ, 2 անգամ ավելի քան արտադրվել է 1938 թվականին, ձուլվել է 720 հազար տոննա պողպատ, 2,5 անգամ ավելի քան 1938 թվականին, 450 հազար տոննա չուգուն, համարյա 3,5 անգամ ավելի, քան 1938 թվականին, ստացվել է 3 միլիարդ 400 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 3 անգամ ավելի, քան 1938 թվականին, 3 միլիարդ 500 միլիոն խորանարդ մետր բնական գազ, 10 անգամ ավելի, քան 1938 թվականին։ Սկսել է ուժեղ չափով զարգանալ արդյունաբերության հումքի բազան։ 1953 թվականին 5 անգամ շատ երկաթ, 3 անգամ շատ մարգանեց և 15 անգամ շատ պղինձ է արտադրվել, քան 1938 թվականին։

● Եթե 10 տարի առաջ Ռումինական ձեռնարկություններում աշխատող մեքենաների 99 տոկոսը բերվում էր արտասահմանից, ապա այժմ պատմության մեջ առաջին անգամ երկրում ստեղծված են ինդուստրիայի այնպիսի ճյուղեր, ինչպես հաստոցաշինությունը, տրակտորաշինությունը, գյուղատնտեսական մեքենաշինությունը, նավթահանման սարքավորումների, էլեկտրատեխնիկական, քիմիական, ավտոմոբիլային արդյունաբերությունը։

● Վերջին 5 տարիների ընթացքում էլեկտրամոտորների արտադրությունը աճել է 60 անգամ։ Անցյալ տարի շահագործման հանձնվեց Մորենիսկու հիդրոէլեկտրակայանը, այս տարի շարք մտավ «Կարմիր աստղ» ջերմաէլեկտրակենտրոնը, Բիկազում հաջողությամբ շարունակվում է Վ. Ի. Լենինի անվան հիդրոէլեկտրակայանի շինարարությունը, որը երկրին տալու է 430 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և այնտեղ գոյացող ջրամբարը ոռոգելու է 300 հազար հեկտար տարածություն։ Միայն անցյալ տարի էլեկտրիֆիկացման են ենթարկվել ավելի շատ գյուղեր, քան հին կարգերի օրոք 70 տարվա ընթացքում։

○ Լայն սպառման առարկաների արտադրությունը 1938 թվականի համեմատությամբ աճել է 2,5 անգամ։ Բամբակի մանվածքը ավելացել է 2 անգամ, բրդյա գործվածքեղենը՝ ավելի քան 2 անգամ, կոշկեղենինը՝ 2,5 անգամ, ապակյա իրերինը՝ 2,5 անգամ, սննդի ձեռնարկությունները թողարկել են ավելի քան 6 անգամ շատ մակարոնեղեն, 3,5 անգամ շատ բուսական յուղ 1,2 անգամ շատ շաքար, 4 անգամ շատ օճառ և այլն։

○ ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների անշահախնդիր եղբայրական օգնության շնորհիվ վերջին 4 տարում Ռումինիայում ստեղծվել են նորագույն տեխնիկայով հագեցված բազմաթիվ նոր, հզոր ձեռնարկություններ, որը հնարավորություն տվեց աշ-



խատանքի արտադրողականությունը 1950 թվականի համեմատությամբ բարձրացնել 38 տոկոսով։ Երկրում աճել են արտադրության հազարավոր ղեկավարներ, տասնյակ հազարավոր երիտասարդ որակյալ բանվորներ ու տեխնիկներ, որոնք հին կադրերի հետ միասին տիրապետելով նոր տեխնիկային, առաջ են տանում սոցիալիստական արդյունաբերությունը։

○ Ռումինիայի գյուղատնտեսության մեջ, սկսած 1949 թվականից, անընդհատ աճում է սոցիալիստական սեկտորը, ընդգրկելով երկրի բոլոր վարելահողերի ավելի քան 20 տոկոսը։ Այդ տարիների ընթացքում աշխատավոր գյուղացիները կամավոր հիմունքներով կազմակերպել են 2.048 կոլեկտիվ տնտեսություն՝ 850 հազար հեկտար հողային տարածությամբ, 2.384 հողօգտագործական ընկերություն՝ ավելի քան 270 հազար հեկտար հողով։ Պետական տնտեսությունները, կոլեկտիվ տնտեսությունները և ընկերությունները ավելի բարձր բերք են ստանում, քան մենատնտես գյուղացիները։

● Ռումինիայի նոր գյուղատնտեսության վերելքի համար ստեղծված է նյութական-տեխնիկական հզոր բազա, որը հնարավորություն է տալիս արմատապես վերափոխելու գյուղատնտեսության պատկերը։ Այսօր Ռումինիայի դաշտերում աշխատում են 25 հազար տրակտոր՝ 15 ուժանոցի վերածած։ Միայն 1949—1954 թվականներին գյուղատնտեսությունը ստացել է ավելի

քան 13 հազար տրակտորային դուժան, ավելի քան 5 հազար շարքացան, 6 հազար կուլտիվատոր, 3 հազար հնձող-խուրձկապող մեքենա, հազարավոր կոմբայններ։ Ռումինիայում կան 220 ՄՏ կայաններ, որոնք հնարավորություն ունեն մեխանիզացիայի ենթարկել գյուղատնտեսության աշխատանքների հիմնական մասը սոցիալիստական սեկտորում և օգնելու մենատնտես գյուղացիներին։ Սկսել են ավելի լայն մասշտաբներով օգտագործել ագրոտեխնիկան, բնական և քիմիական պարարտանյութերը։

● Ռումինական բանվորական պարտիան և ժողովրդական կառավարությունը միջոցառումներ են ձեռնարկել առաջիկա 2—3 տարիներում յուրացնելու հողային նոր տարածություններ, այն հաշվով, որ 1956 թվականին երկրի վարելահողերի տարածությունը հասնի մինչև 10 միլիոն հեկտարի։ Դա հնարավորություն կտա ավելացնելու ցորենի, եգիպտացորենի, տեխնիկական և կերային կուլտուրաների արտադրությունը։ Ընթացիկ տարում գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները 70 տոկոսով ավելի են, քան 1953 թվականին։

1949—1953 թվականներին երկրի հացահատիկի համախառն բերքը կազմեց տարեկան միջին հաշվով 4.530 հազար տոննա, այս տարի պլանավորված է ստանալ 8.880 հազար տոննա, իսկ առաջիկա 2—3 տարում՝ 10.500 հազար տոննա։ Բանջարեղեն կուլտու-



րաներից ստացվել է 92 հազար տոննա բերք՝ այս տարի նախատեսվում է ստանալ 172 հազար տոննա, իսկ առաջիկա 2—3 տարում՝ 206 հազար տոննա։ Տեխնիկական կուլտուրաների գծով պլանավորված է 1.700 հազար տոննայի փոխարեն 1954 թվականին ստանալ 2.640 հազար տոննա, իսկ առաջիկա 2—3 տարում՝ 3.020 հազար տոննա բերք։

○ Ռումինական բանվորական պարտիայի դիրեկտիվներով նախատեսվում է ընդարձակել և ամրապնդել պետական տնտեսությունների նյութա-տեխնիկական բազան։ Պետական տնտեսությունների հողային տարածությունը 1956 թվականին հասցվելու է 700 հազար հեկտարի՝ ներկայիս 660 հազար հեկտարի փոխարեն։

● Երկրում լայն ծավալ է ստացել պետական և կոոպերատիվ առևտուրը։ Ապրանքաշրջանառության ծավալը 1951 թվականին կազմել է 15 միլիարդ լեյ (100 լեյը հավասար է 66 ռուբլի 67 կոպեկի), 1954 թվականին ապրանքաշրջանառությունը հասնելու է 22 միլիարդ լեյի։ Արտաքին առևտուրը լրիվին գտնվում է պետության ձեռքում։ Ռումինիան առևտուր է անում ՍՍՌՄ-ի, ժողովրդական դեմոկրատիայի և այլ երկրների հետ։ Առևտրական պայմանագրեր և համաձայնագրեր են կնքված ավելի քան 40 կապիտալիստական երկրների հետ։

● Անընդհատ աճում է ժողովրդի նյութական-կուլ-

տուրական բարեկեցությունը: Ընթացիկ տարվա առաջին կիսամյակին բանվորների միջին եկամուտը անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ աճել է 15 տոկոսով: Գների սիստեմատիկ իջեցումը բարձրացնում է աշխատավորների գնողունակությունը: Ընթացիկ տարվա առաջին 3 ամսում բնակչությանը 22 տոկոսով շատ մակարոնեղեն, 21 տոկոսով շատ շաքար, 16 տոկոսով շատ երշիկեղեն է վաճառվել, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում:

○ Պետությունը ամեն տարի մեծ գումարներ է ծախսում սոցիալական ապահովագրության, առողջապահության, կրթության վրա: Բնակչությունը ստանում է ձրի բժշկական օգնություն, հազարավոր աշխատավորներ հանգստանում և բուժվում են հանգստի տներում և սանատորիաներում: Ծերության և աշխատանքի ընդունակությունը կորցնելու դեպքում կենսաթոշակ է տրվում: Հղի կանանց տրվում է ֆիզիոլոգիական արձակուրդ, բազմազավակ և միայնակ մայրերին պետության կողմից տրվում է նպաստ: Միայն 1953 թվականին սոցիալ-կուլտուրական միջոցառումների գծով կատարված ծախսերը կազմեցին ավելի քան 5 միլիարդ լեյ, այսինքն համարյա 8 անգամ ավելի, քան 1948 թվականին:

○ Ռեսպուբլիկայում մտցված է ընդհանուր տարրական պարտադիր ձրի ուսուցում: Միջնակարգ դպրոցների թիվը նախապատերազմյան ժամանակի համե-



մատությամբ ավելացել է 3 անգամ, իսկ նրանցում սովորողների թիվը համարյա 4 անգամ: 1938 թվականի 16-ի փոխարեն այժմ ռեսպուբլիկայում կա 50 բարձրագույն ուսումնական հաստատություն: Միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողներին պետությունը թոշակ է տալիս:

● Գիտությունը, արվեստը, կուլտուրան, սպորտը դարձել են ռումինական ժողովրդի սեփականությունը: Աշխատավորության համար գործում են ավելի քան 6 հազար ակումբ և կարմիր անկյուն, ավելի քան 12 հազար գյուղական կուլտուրայի տուն, հազարավոր գրադարաններ, բազմաթիվ դահլիճներ և սպորտային բազաներ:

Թերթը, գիրքը, ռադիոն, կինոն, ակումբները, գեղարվեստական ինքնագործունեությունը մտել են ժողովրդի ամենօրյա կենցաղի մեջ:

---

տուրական բարեկեցությունը։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակին բանվորների միջին եկամուտը անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ աճել է 15 տոկոսով։ Գների սիստեմատիկ իջեցումը բարձրացնում է աշխատավորների գնողունակությունը։ Ընթացիկ տարվա առաջին 3 ամսում բնակչությանը 22 տոկոսով շատ մակարոնեղեն, 21 տոկոսով շատ շաքար, 16 տոկոսով շատ երշիկեղեն է վաճառվել, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։

○ Պետությունը ամեն տարի մեծ գումարներ է ծախսում սոցիալական ապահովագրության, առողջապահության, կրթության վրա։ Բնակչությունը ստանում է ձրի բժշկական օգնություն, հազարավոր աշխատավորներ հանգստանում և բուժվում են հանգստի տներում և սանատորիաներում։ Ծերության և աշխատունակությունը կորցնելու դեպքում կենսաթոշակ է տրվում։ Հղի կանանց տրվում է ֆիզիոլոգիական արձակուրդ, բազմազավակ և միայնակ մայրերին պետության կողմից տրվում է նպաստ։ Միայն 1953 թվականին սոցիալ-կուլտուրական միջոցառումների գծով կատարված ծախսերը կազմեցին ավելի քան 5 միլիարդ լեյ, այսինքն համարյա 8 անգամ ավելի, քան 1948 թվականին։

○ Ռեսպուբլիկայում մտցված է ընդհանուր տարրական պարտադիր ձրի ուսուցում։ Միջնակարգ դպրոցների թիվը նախապատերազմյան ժամանակի համե-



մատությամբ ավելացել է 3 անգամ, իսկ նրանցում սովորողների թիվը համարյա 4 անգամ։ 1938 թվականի 16-ի փոխարեն այժմ ռեսպուբլիկայում կա 50 բարձրագույն ուսումնական հաստատություն։ Միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողներին պետությունը թոշակ է տալիս։

● Գիտությունը, արվեստը, կուլտուրան, սպորտը դարձել են ռումինական ժողովրդի սեփականությունը։ Աշխատավորության համար գործում են ավելի քան 6 հազար ակումբ և կարմիր անկյուն, ավելի քան 12 հազար գյուղական կուլտուրայի տուն, հազարավոր գրադարաններ, բազմաթիվ դահլիճներ և սպորտային բազաներ։

Թերթը, գիրքը, ռադիոն, կինոն, ակումբները, գեղարվեստական ինքնագործունեությունը մտել են ժողովրդի ամենօրյա կենցաղի մեջ։

---

# ՏԱՅՎԱՆ (ՖՈՐՄՈԶԱ)

*Տայվան կղզին հնուց ի վեր Չինական տերիտորիա է և գտնվում է ասիական մայր ցամաքից 200 կիլոմետր հեռավորության վրա։ Նա Չինաստանի մայր ցամաքից բաժանված է Ֆորմոզա նեղուցով։ Տայվանի տերիտորիան 35 հազար 759 քառակուսի կիլոմետր է, բնակչությունը 7 միլիոն մարդ։ Տայվանի ընդերքը հարուստ է օգտակար հանածոներով՝ ածխով, պղնձով, ոսկով, արծաթով, բնական գազով և նավթով։ Կղզու գլխավոր քաղաքներն են՝ Տայխոկու, Տայվան, Կիրյան, Տակաո, Կագի։*

*Տայվան կղզին Չինաստանի կազմի մեջ է մտել մոտավորապես մեկ ու կես հազար տարի առաջ և բնակեցված է առավելապես չինացիներով։ Սակայն իր ստրատեգիական դիրքով կղզին վաղուց է ինչ գրավել էր օտարերկրյա տերությունների ուշադրությունը, որպես կարևոր պլացդարմ ասիական մայր ցամաքի վրա հարձակվելու համար։ Կղզու վրա հարձակվել են ֆրանսիացիները, անգլիացիները, հոլանդացիները, բելգիացիները, փորթուգալացիները, յապոնացիները և այլն։*

*1874 թվականին Յապոնիան զավթեց Տայվան կղզին, հետո Անգլիայի ճնշմամբ թողեց այն։ 1895 թվականին, Սիմոնոսեկի հաշտության պայմանագրով Տայվանը բռնությամբ անջատվեց Չինաստանից և միացվեց Յապոնիային։ Այդ ժամանակից սկսած կղզու բնակչությունը պայքար էր մղում յապոնական ագրեսորների դեմ։ Տայվանի ժողովրդական մասսաները հետագայում ևս չդադարեցրին անկախության համար մղվող իրենց պայքարը, որի մասին վկայում է 1912—1915 թվականին ծավալված ազգային-ազատագրական շարժման հզոր ալիքը և 1930 թվականի ապստամբությունը։*

*Հիսուն տարվա ընթացքում Տայվանի տերիտորիան յապոնացիների համար ծառայում էր որպես ռազմական բազա և որպես գլխավոր պլացդարմ Չինաստանի դեմ մղվող ռազմական ավանտյուրաներում։*

*Տայվանում յապոնական օկուպացիային վերջ տրվեց միլիտարիստական Յապոնիայի ջախջախումը 1945 թվականին։ Բայց դրանից հետո կղզին շուտով ընկավ Չինաստանից բռնությամբ անջատված տերիտորիայի դրության մեջ։ Չինաստանի մայր ցամաքից դուրս քշված Չան Կայ-շիի կլիկը և գոմինդանական բանդայի մնացորդները փախան Տայվան և այնտեղ պատսպարվեցին ԱՄՆ-ի զինված ուժերի պաշտպանության տակ։*

*Ամերիկյան ռազմամոլները հանդիսանալով կղզու փաստացի տերերը, գոմինդանական թափթփուկների հետ միասին Տայվանը դարձրին Չինական ժողո-*

վրդական Ռեսպուբլիկայի դեմ ուղղված ռազմական խոշոր բազաներից մեկը Խաղաղ օվկիանոսում: Ներկայումս ամերիկյան ագրեսորները Տայվան կղզում կառուցել են ավելի քան 70 օդանավակայան: Կղզու ջրերը հսկում է ամերիկյան 7-րդ նավատորմը:

Պաշտպանություն ստանալով Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարության կողմից, Չան Կայ-շիի դավաճանական շայկան վերջին մի քանի տարիների ընթացքում փորձում է ճնշել հայրենասիրական շարժումը Տայվանում. նա սպանում է հայրենասիրական տրամադրություն ունեցող բնակիչներին, կողոպտում ժողովրդական հարստությունը, երիտասարդներին ստիպում է դառնալ թնդանոթի միս, կղզու բնակիչներին դատապարտել է սարսափելի թշվառության ու տառապանքների: Բանդիտական այդ շայկան խաբում և հետապնդում է նաև մյուս երկրներում ապրող չինացիներին: Գոմինդանական բանդիտները, իրենց ամերիկյան տերերի օգնությամբ, հարձակումներ են կատարում մոտակա կղզիների և մայր ցամաքի վրա, ՉԺՌ կամ նրա հետ առևտուր անող երկրների առևտրական նավերի վրա, ուղարկում են գաղտնի գործակալներ սաբոտաժներ կազմակերպելու համար, նրանք անընդհատ վարում են քայքայիչ պատերազմ ՉԺՌ դեմ:

Վերջին ժամանակներս գոմինդանականները ակտիվացրին իրենց բանդիտական թռիչքները Չինաստանի հարավ-արևելյան ափերի վրա: Հուլիսին նրանք չորս



անգամ հրետանային գնդակոծման ենթարկեցին չինական և օտարերկրյա առևտրական նավերը, 16 անգամ հարձակվել են Չինաստանի ծովային սահմանների վրա: Հուլիսի 18-ին նրանք ռմբակոծել են չինական Ամոյ նավահանգիստը, որտեղ կանգնած էին առևտրական նավերը, այդ թվում մեկ անգլիական նավ: Օգոստոսին և սեպտեմբերին գոմինդանականների ծովահենային հարձակումները ավելի հաճախակի դարձան: Նրանք գնդակոծում և ռմբակոծում են Ֆուցզյան նահանգի և կղզու առափնյա շրջանների բնակավայրերը: Վերջին մեկ ու կես տարվա ընթացքում գոմինդանական բանդիտները Ֆուցզյան նահանգի առափնյա շրջանում գավթել են տասնվեց ձկնորսական նավ:

Չան Կայ-շիի դավաճանական շայկան նպատակադրվել է Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարության հետ կնքել այսպես կոչված «Երկկողմանի պայմանագիր փոխադարձ անվտանգության մասին», այսինքն նրա հետ հաստատել ռազմական դաշինք, աշխատելով ԱՄՆ-ի զինված ուժերի հետ միասին հարձակվել Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի վրա:

Չին ժողովուրդը լավ է հասկանում, թե խաղաղության գործի համար ինչպիսի վտանգ է ներկայացնում գոմինդանականների շայկան, որի պրոֆեսիան համաշխարհային նոր պատերազմի հրահրումն է:

«Տայվանի ազատագրումը,— օգոստոսի սկզբին

կենտրոնական ժողովրդական կառավարության խորհրդի ընդլայնված նիստում հայտարարեց պրեմյեր Չժոու Էն-լայը,—հանդիսանում է չին ժողովրդի պատվավոր խնդիրը։ Միայն ազատելով Տայվանը Չան Կայ-շիի դավաճանական խմբի տիրապետությունից, միայն կատարելով այդ պատվավոր խնդիրը, մենք կհասնենք մեր մեծ Հայրենիքի լրիվ միավորմանը և չինական ժողովրդի ազատագրման մեծ գործում կհասնենք լիակատար հաղթանակի և էլ ավելի կամրապնդենք խաղաղությունը և անվտանգությունը Ասիայում և ամբողջ աշխարհում»։ Այդ են պահանջում նաև Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի բոլոր դեմոկրատական պարտիաները և ժողովրդական կազմակերպությունները իրենց վերջերս ընդունած համատեղ դեկլարացիայով։

Չժոու Էն-լայի հայտարարությունը և Չինաստանի դեմոկրատական պարտիաների ու ժողովրդական կազմակերպությունների դեկլարացիան արտահայտում է ամբողջ չին մեծ ժողովրդի կամքը և համապատասխանում է խաղաղության համար ժողովուրդների պայքարի շահերին։ Ուստի չին ժողովուրդը միահամուռ հանդես է գալիս հանուն Տայվանի ազատագրման և խաղաղության թշնամիների ոչ մի ոտնձգություն չի կարող խանգարել այդ պանծալի պատմական խնդրի լուծմանը։

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— *«Ապրիլյան թեզիսներ»։ Գինը 90 կ., էջ 84, տիրաժ 7000։*

Ա. ԴԵՆԻՍՈՎ— *«ՍՍՌՄ Կոնստիտուցիան և նրա միջազգային նշանակությունը»։ Գինը 80 կ., էջ 84, տիրաժ 5000։*

Ս. Կ. ԳՈՒՍԵՎ ԵՎ Ի. Տ. ԿՈՒԶՆԵՑՈՎ— *«ՄՏ կայանների ներքին ռեզերվները»։ Գինը 2 ռ. 95 կ., էջ 178, տիրաժ 3000։*

Վ. ԶՈՏՈՎ *(ՍՍՌՄ պարենային ապրանքների արդյունաբերության մինիստր)— «Պարենային ապրանքների արտադրության շեշտակի վերելքի համար»։ Գինը 95 կ., էջ 62, տիրաժ 5000։*

ՎՐԹԱՆԵՍ ՓԱՓԱԶՅԱՆ— *«Հոգի աշխատավորը»։ Գինը 3 ռ. 25 կ., էջ 56, տիրաժ 10000։*

ԱՐՏԱՇԵՍ ՈՍԿԵՐՉՅԱՆ— *«Սովետական գրականության և գրական ժառանգության հարցերը»։ Գինը 7 ռ. 70 կ., էջ 356, տիրաժ 3000։*

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА

№ 18 1954 г.

*ՎՖ 12159* *Պատվեր 778* *Տիրաժ 7900*

---

*Գլխպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան*
*Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*